## ՄԱՄԼՈՅ ԱՍՈՒԼԻՍ

(Շար. Զ. էջէն)

րենց նախասիրութեանց։ Մենք փրոֆեսիոնել մարզիկներ չունինք, բոլորն ալ սիրողներ են. ինչպէս օրինակ, մեր ըմբշամարտիկներէն ոմանք ուսանող են, ուրիշներ՝ գործաւոր։

Հ.— Մարզիչները պետութեան կողմէ՞ կը վարձատրուին։

Պ.— Այո՛, պետութիւնն է որ ամէն ինչ կը հոգայ։

Հ.— Վաստակաւոր տիտղոսը ամսական վարձատրութեան վրայ տարբերութիւն կ՚ընէ՞։

Պ.— Խօսելով իմ անձիս մասին (կ՚ըսէ Մուրատեան), իբրեւ մարզիչ ամսաթոշակ կը ստանամ, վաստակաւոր կոչումը նիւթական վարձատրութեան համար չի տրուիր, այլ նայած՝ անձին կատարած աշխատանքին, հասցուցած սերունդին, դաստիարակութեան ձեւին եւ մանկավարժական մեթոտին։ Ես հպարտ եմ այդ տիտղոսին համար եւ նիւթական ոչ մէկ վարձատրութիւն կը սպասեմ։

Հ.— Գահիրէ եկած ըմբշամարտիկներու խումբին մէջ կը գտնուի՞ն Ս. Միութեան հաւաքական խումբին մաս կազմող անդամներ։

Պ.— Այո, Եուրիա Խաչատրեանը Սով. Միութեան հաւաքական խումբին անդամ է, ինչպէս նաեւ Գէորգ Գրիգորեանը, որ մեզի հետ չէ եկած՝ տրուած ըլլալով որ Ապրիլ 7ին Վիեննայի մէջ համաշխարհային մրցումի պիտի մասնակցի։ Իսկ Սեդա Պապիկեան 1953էն ի վեր Ս. Միութեան ախոյեանուհին է։

Հ.— ԱՄՀի ըմբշամարտիկներու այս խումբը կրնա՞յ Մեքսիքոյի ողիմպիականին մասնակցիլ։

Պ.— Այո՛, եթէ իրենց փորձերը կանոնաւոր կերպով կատարեն՝ վստահ եմ որ մենք անոնց պիտի հանդիպինք Մեքսիքոյի մէջ։

Հ.— Մեքսիքոյի ողիմպիականին մասնակցող Երեւանի ըմբշամարտիկներէն որո՞նք պիտի ըլլան։

Պ.— Մեր մարզած Զերնիքովը, որ Սեւանի շրջանին մէջ ծնած է եւ իր մայրենի լեզուին չափ լաւ կը խօսի հայերէնը։ Ան մասնակցած է 1960ի ողիմպիականին եւ երրորդ տեղը գրաւած է, իսկ Պրագիլի եւ Պուտափեշտի (անցեալ տարի) միջազգային ուսանողական խաղերուն Բ. տեղը գրաւած է։ Ս. Միութեան ըմբշամարտի արական խումբը միշտ յաղթական դուրս եկած է, իսկ իգական խումբը, որ եօթը տարի շարունակ աշխարհի ախոյեանութիւնը շահած է, իրեն հաւասարը չունի։

Հ.— Հայաստանի Ֆութպոլի խումբին անունը, որ Սպարտակ էր, ինչո՞ւ Արարատի վերածուեցաւ։

Պ.— Որովհետեւ նախ Սպարտակ մարզական միութեան ենթակայ էր, ապա Աշխատանք միութեան կապուեցաւ, սակայն չուզելով այդ անունը տալ՝ յարմար նկատուեցաւ հայութիւնը խորհրդանշող անուն մը տալ եւ Արարատ կոչուեցաւ, որպէսզի Մասիսներու նման միշտ բարձր մնայ. եւ Արարատ խումբը արդարացուց իր վրայ դրուած յոյսերը եւ այսօր Ս. Միութեան առաջին կարգի խումբ է։ Ես վստահ եմ՝ որ այդ անունը դրուած ըլլալուն համար դո՛ւք ալ գոհ էք, այնպէս չէ՞։ (Հաւանութեան բացագանչութիւններ)։

Վերջին խօսողը եղաւ՝ Ընկ. Հայրապետեան.

— Աւարտելով այս ասուլիսը, մեր պատուիրակութեան անունով կ՚ուզեմ անգամ մը եւս շնորհակալութիւն յայտնել ԱՄՀի Երիտասարդութեան Նախարար Պր. Թալաաթ Խայրիին, Ողիմպիական Կոմիտէի նախագահին եւ ընդհ. քարտուղարին։ Գովեստի եւ երախտագիտութեան խօսք ունիմ ընկ. Սարգիս Պալաեանին, աւելի նիշդ Ջահակիր Սարգիսին, որ «Ջահակիր» շաբաթաթերթի կողքին կը հրատարակէ նաեւ «Երիտասարդական-Մարզական» ամսօրեայ յաւելուած մը, որ շատ մեծ տպաւորութիւն ձգեց մեր վրայ, ինչպէս նաեւ «Արեւ» լաւ թերթի խմբագրութեան. շնորհակալութիւն հայկական ակումբներու ղեկավարներուն՝ Հ. Գարայեանի, Վ. Տեփոյեանի, Ն. Պալաեանի եւ ձեզի սիրելի ներկաներ, Մենք Եգիպտոսէն կը մեկնինք այստեղի հայ գաղութին մասին լաւագոյն տպաւորութիւններ տանելով մեզի հետ։

Ապա, ներկաները հիւրասիրուեցան օշարակով եւ քաղցրաւենիներով եւ քանիցս նկարուեցան խմբովին։

ՆՈՒՊԱՐ ՔԻՒՓԷԼԵԱՆ

---

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ԺՈՂՈՎՐԴԱՅԻՆ ՀՈԳԵՃԱՇ

ԱՊՐԻԼ 24Ի ՅԻՍՆԱՄԵԱԿԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

ԿԱՌՈՒՑՈՒԱԾ ՅՈՒՇԱՐՁԱՆԻ ԲԱՑՄԱՆ ԱՌԹԻՒ

Հովանաւորութեամբ

ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ

ԵՒ

Նախագահութեամբ

ԹԵՄԻՍ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ

ԳԵՐՇ. Տ. ՄԱՄԲՐԷ ՍՐԲ. ԱՐՔԵՊՍ. ՍԻՐՈՒՆԵԱՆԻ

Կազմակերպութեամբ

ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՅՈՒՇԱՐՁԱՆԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ

Տեղի կ՚ունենայ Աղեքսանդրիոյ Մելգոնեան Մանկապարտէզի

Սրահին մէջ

Կիրակի, 24 Ապրիլ 1966, կ.ե. ժամը 1.30ին

ԾԱՆՕԹ.— Հրաւէրները ստանալ Աղեքսանդրիոյ Ազգային Առաջնորդարանէն։

---

## ՔԱՋ ՀՈՎԻՒԸ

(Շար. Դ. էջէն)

որ մեզ պիտի զօրացնէ՝ կրելու անօրէններին կողմէ մեր ուսին դրուած խաչը, նման այն խաչին, որ մեր Տիրոջ ուսը կրեց։ Զերկմտինք, մեր լոյս հաւատքը մեզ պիտի զօրացնէ՝ սիրով ըմպելու համար մեր ազգին վիճակուած դառնութիւնը»։

«Սիրելինե՛րս, դուք զիս սիրեցիք որպէս ձեր հոգեւոր հայրը և անսացիք իմ խրատներուս։ Ես ալ ձեզ սիրեցի որպէս իմ հոգեւոր զաւակներս։ Կ՚օրհնեմ բոլորդ ալ...։ Ես՝ խաչը ձեռքս՝ պիտի առաջնորդեմ ձեզ հոն, ուր մեր վերջին կայանը որոշած են անօրէնները... հոն է որ դուք ուշադիր պիտի հետեւիք ինձ եւ շարժիք այնպէս ես շարժելու եմ.., Մեզմէ ոչ մէկը ողջ ձգելու չեն... Այդպիսի պարագային մեր գործած սպանութիւնը Աստուծոյ հաճոյ է։ Միտք պահեցէք այս խօսքը եւ զօրացէք...»։

Վերջացուց խօսքը եւ մտերմօրէն արտասանեց «Խոստովանիմ եւ հաւատամ»ը, իսկ ժողովուրդը մօտենալով հաղորդութեան «Մեղայ Աստուծոյ» ըսելով հաղորդուեցաւ լալահառաչ։

Եւ ժամը տասէն առաջ գիւղի վերջին կարաւանը շարժեցաւ Տէր Ռէթէոսին վեր բարձրացուցած խաչին առաջնորդութեամբ։

Երկու շաբաթ վերջ կառավարական շրջանակներու մէջ սարսափով իրարու կը փսփսային.

— Մ. Գիւղի վերջին կարաւանի կիները, Քէշիշին առաջնորդութեամբ, քարերով հարիւրաւոր թուրքեր և քիւրտեր ջարդած են...»։

Ե. Ս.

---

## ՍՏԱՑԱՆՔ

ԵՐՋԱՆԿՈՒԹԵԱՆ ՈՒՂԻՆ (Թատերախաղ 5 արար) և Ի՞ՆՉ ՇՈՒՏ ՓՈԽՈՒԵՑԱՐ (Թատերախաղ 5 արար), գրեց Յակոբ Նորունի. կողքի գծ. Լեւոն Փոլատեանի, տպ. Տօնիկեան, Պէյրութ, 1966։ 47 էջ, մաքուր տպագրութիւն, գին մէկ ու կէս տոլար։ Դիմել հեղինակին՝ Օթել Սիկալ, Պէյրութ։

ԸՆԴՀԱՏՈՒԱԾ ԳՈՐՈՒՆ, պատմուածքներ յունահայ կեանքէ, գրեց Վահան Դաքէսեան։ Հրատ. Հայաստան, Երեւան, 1965։ Գեղակազմ, 268 էջ, գին 47 կոպէկ. Նուէր հեղինակէն։

ՔՆԱՐԻԿ ՎԱՐԴԱՆԵԱՆ, յայտագիր ցուցահանդէսի (Փետր. 1965), Հայաստանի նկարիչների միութեան նկարչի Տան մէջ։ Կենսագրական և գեղատիպ վերարտադրութիւններ։ Խմբ. Ա. Տօնիկեան։ Նուէր՝ Փրոֆ. Արտաշէս Թոխեանէ։

---

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

28 ԱՊՐԻԼ 1966


ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

## ԸՆԿ. Յ. ՆՈՐՈՒՆԻ՝ ՄԵՐ ՀԱՒԿԹԱՍԵՂԱՆԻՆ

Հինգշաբթի, Ապրիլ 14ի երեկոյեան, Հայկական Ընթերցասրահի մէջ տեղի ունեցաւ Ս. Զատկի աւանդական հաւկթասեղանը, մասնակցութեամբ մեր երիտասարդ-երիտասարդուհիներուն:

Երեկոյթը յաւելեալ փայլ մը ստացած էր ներկայութեամբը Լիբանանի շրջանի մեր ընկերներէն՝ հասարակական գործիչ եւ գրող («Արարատ» Գրականի խմբագիր) Ընկ. Յակոբ Նորունիի եւ իր ընտանիքին:

Հաւկթախաղէն ետք, Ընկ. Ս. Գալաճեան բացաւ երեկոյթը, բարի գալուստ մաղթեց եւ ներկայացուց հիւր ընկերը, որ խօսք առնելով մեզի հաղորդեց Լիբանանահայոց ողջոյնները եւ արտայայտուեցաւ Ա.Մ.Հ. իր այցելութեան մասին, մեծապէս գնահատելով ժողովուրդը եւ իրականացած յառաջդիմութիւնները. խօսեցաւ մեր գաղութին մասին, որմէ խիստ լաւ տպաւորուած էր, հակառակ մեկնումներու: Ապա տուաւ տեղեկութիւններ Լիբանանեան հայ գաղութէն: Ընկերը իր խօսքին աւարտեց՝ շատցնելով փոխադարձ այցելութիւններու յաճախականութիւնը, զայն օգտակար նկատելով ազգապահպանման գործին։

Խօսեցան նաեւ ընկերներ Ս. Վեցիկեան եւ Խ. Իսկէնեան: Փոքրիկ Նուպար, ը՛ս սովորականին, մթնոլորտը տաքցուց իր արտասանութիւններով։ Ստեղծուեցաւ մտերմիկ մթնոլորտ. պարպուեցան բաժակներ՝ մեր արժէքներուն կենացը:

Հաւաքոյթը վերջ գտաւ կէս գիշերին։

Ս. Կ.

### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

*Իրենց սիրելի եղբօր եւ մօրեղբօր ողբ. Գէորգ Մեսրոպեանի մահուան քառասունքին առթիւ, Տէր եւ Տիկին Մարտիրոս Սուլթանեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Սուլթանեան, եղբայրը՝ Պերճ Սուլթանեան (Պոսթոն) կը նուիրեն 200 ե.դ.։*

### ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

Երեքշաբթի, 26 Ապրիլի գիշերը խմբագրատանս մէջ հաճոյքն ունեցանք ընդունելու այցելութիւնը Պէյրութի մեր պաշտօնակից «Սփիւռք»ի տէր եւ տնօրէն եւ «Սեւան» Հրատարակչականի պատասխանատու՝ գրագէտ Սիմոն Սիմոնեանի: Ան երկու օրով կը գտնուէր Ա.Մ.Հ., դէպի Սուտան իր ճամբուն վրայ։

Պր. Սիմոնեան տեղեկացաւ մեր կեանքի մանրամասնութիւններուն եւ ուրախառիթ լուրեր հաղորդեց մեզի՝ Լիբանանի հայոց մշակութային գործունէութեան շուրջ։ Իր ճամբորդական ծրագիրը վերջին պահուն փոխուած ըլլալով, ան կը վերադառնայ Պէյրութ։

Բարի գալուստ եւ բարի վերադարձ։

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

*Իրենց սիրելի եղբօր և մօրեղբօր ողբ. Գէորգ Մեսրոպեանի մահուան քառասունքին առթիւ, Տէր և Տիկին Մարտիրոս Սուլթանեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Սուլթանեան, եղբայրը՝ Պերճ Սուլթանեան (Պոսթոն) կը նուիրեն 100 ե.դ.:*

*Առ ի գնահատութիւն թերթիս ազգային—ընկերային ուղղութեան, Աղեքսանդրիայէն ստացանք հետեւեալ նուիրատուութիւնները.—*

*Տէր և Տիկ. Սուքիաս Թապաքեան* 100 *ե.դ.*

*Ոմն* (*Ընկլ. թիւ* 669) 50 *ե.դ.*



### Ս Տ Ա Ց Ա Ն Ք

*ԺԻՕՆԵՍ Է ԱԳՍԻՈՆ-ՎԵՐԵԼՔ, կրօնաքարոզական ֆրանսերէն եւ հայերէն երկամսեայ հանդէս, խմբ. Վեր. Յար. Հելվաճեան, Մարտ-Ապրիլ* 1965 (*Մեծ Եղեռնի Յիսնամեակը*) *թիւը և Նոյ.-Դեկտ.* 1965, *Յունուար Փետր.* 1966 *թիւերը։ Մաքուր տպագրութիւն, շահեկան բովանդակութիւն, պատկերազարդ։ Բաժնեգին* 10 *ֆրանք: Դիմել՝* 6 *Փլաս տը լա Ռոթոնտ, Սէն-Ժերոմ* (13), *Մարսէյլ* 13, *Ֆրանսա։*



### ՆԱՄԱԿ ՀԱՅԱՍՏԱՆԷՆ

(Շար. Ե. էջէն)

*Իրապէս առողջ ըլլալը անկէ անդին՝ ուր ալ ըլլաս, պիտի աշխատիս, պառկիս, ելլես, առտու, իրիկուն...։*

*Նշանին, Ցասմիկին համբոյրները. չըլլայ որ երազատեսներու պէս միտքերնին դնեն օտարներու ծառայելը, յոյս ունենալով որ փողոցը դրամ ցանուած է և պիտի ժողվեն։ Հոսկէ դուրս ելլողներն ալ...։*

*Հիմա Հայաստանին դուռները բաց են. ուզողը կրնայ եկած տեղը երթալ եթէ երաշխաւոր ունի այնտեղ։ Ինչպէս գիտենք, այնտեղէն մեկնողներուն մէջ կային «հեռանալու մասնաւոր պատճառներ» (անձնական, քաղաքական, տուրքի, զինուորութեան) ունեցողներ։ Հոսկէ գացողներն ալ — ունին իրենց ՄԱՍՆԱՒՈՐ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ, ինքզինքնին ծածկելու զանազան անհամութիւններէ...։*

*Թո՛ղ երթան, մինչեւ դժոխք: Մարդ ուր որ երթայ՝ ինքզինքը կը տանի...: Սնափառը յագենալ չունենար, խաժը կը քաշկռտուի։ Մէկ խօսքով՝ գլտորող քարը մամուռ չի բռներ...։ Իսկ եթէ պիտի գլտորիս, գոնէ հիմք ունենայ նպատակդ...։*

*Մարդ կայ որ կը սիրէ մուրացկանութիւնը, համով կուգայ ուրիշէն կերածը. մարդ ալ կայ որ հանգիստ իր տունին անկիւնը ախորժակով կ'ուտէ իր աղ ու հացը...։ Իսկ հոդ գտնուող քանի մը վայրերանները, թո՛ղ երթան օտարին էջը լուալու քան թէ հայրենի երդիկին վրայ քար մը աւելցնելու։ Համոզումի հարց է։ Հիմա պիտի գրէ Ռոզիկը....*

*համբոյրներով՝ Պ. ԵՐԿԱԹ*

*Հոգիս մայրիկս, հայրիկս...*

*Վերջնականապէս հաստատուեցայ Երեւան, Յակոբին քովը։ Կարասիներն ալ բերինք։ Հիմակ ու հիմա վերը մէկ սենեակին մէջ տեղաւորեցի ննջասենեակս, մնացածը վարն է. ամառը քիչ մը նորոգութենէ ետք, վար պիտի իջնենք. այն ժամանակ զատ տուն պիտի ունենամ:*

*Իմ մասիս բնաւ մի մտահոգուիք, շատ հանգիստ ենք։ Արփինէ Թանթիկին տունը պառկեցայ, Մարի Թանթիկս ալ գացի. Ննիկին ամուսինին ծանօթացայ, շատ աղուոր և բարի երիտասարդ մըն է։*

*Արմէնին յաջողութիւններն ալ տեսայ. Ճազին մէջ թրոմփեթիսթ է: Աչքերուս չեմ հաւատար. սանկ զարմիկներ ունինք եղեր. աղբարիկիս ըսէ որ ամէն ամառ օդափոխութեան ալ կ'երթայ...: Ի՜նչ գեղեցիկ տեղեր պատկերներ քաշուած տեսայ...։*

*Հոգիս, մամա, անկեղծ կ'ըսեմ, բոլորին գէշ լեզուներուն չըհաւատաս։ Ամէն բան ունինք հոս, ոչ մէկ նեղութիւն չունինք. պակաս բանի մը չհանդիպեցայ։ Իսկ Ցասմիկին ալ ըսէ որ՝ հոս մինչեւ իսկ «Հալի կալի» կը նուագէ Արմէնը։*

*Այսօր Արփինէ Թանթիկս ճաշեցինք. կէսօրէ ետքն ալ ռըգորտըրի վրայի երգերը մտիկ ըրինք, Նինիկը, ամուսինը, Սիվիկը, Արմէնը։ Ես ալ իմ ձայնապնակներս բերի, ապրեցանք։*

*Շուտ պատասխանեցէք։*

*ՌՈԶԻԿ*

# ՅԱՒԵՐԺԱԿԱՆ ՀԱՅԸ

1909 Ապրիլ 1ին թուրքերը յարձակեցան Ատանայի հայոց վրայ, սակայն երբ նկատեցին որ իրենց զոհերը շատ էին՝ դիմեցին Անգլիոյ հիւպատոսին, որպէսզի ան թելադրէ հայոց զէնքերը յանձնել։ Հայերը հաւատացին հիւպատոսի խօսքերուն եւ յանձնեցին իրենց բոլոր զէնքերը։ Չուշացաւ սակայն, Ատանայի 30000 հայոց ջարդը...։ Թուրքը զինաթափած էր հայերը՝ իր ծրագիրը դիւրութեամբ եւ առանց արգելքի գործադրելու համար։

Այս աղէտը պատահեցաւ Սուլթան Համիտի օրով, եւ որուն մեղսակից էին իթթիհատականները (երիտասարդ թուրքեր)։ Վերջինները իրենք զիրենք հայոց բարեկամ ցոյց տալով, գահընկէց ըրին Համիտը։

Անոր յաջորդեց Մոհամետ Ռէշատ Բ., որ խաղալիկ էր իթթիհատականներուն ձեռքը։

Հայերը երբ նկատեցին, որ իրենց ազատութիւնը հետզհետէ աւելի կը կաշկանդուի, Պերլինի վեհաժողովի 61րդ յօդուածին իրագործումը պահանջեցին։

Նորվեկիացի Հոֆ եւ հոլանտացի Վեստենենք եւրոպական երկիրներու կողմէ որպէս քննիչ ղրկուեցան Հայաստան։ Դժբախտաբար նոյն տարուան Նոյեմբերին ծագեցաւ համաշխարհային Ա. պատերազմը եւ երկու քննիչները վերադարձան իրենց երկիրները՝ հայերը թուրքերուն դէմ բոլորովին առանձին ձգելով։

Քանի մը գաղտնի հանդիպումներէ ետք, թուրքերը 1915 Ապրիլին գումարեցին իրենց վերջին ժողովը, որուն կը նախագահէին երիտասարդ թուրք կուսակցութեան պետերը՝ Թալէաթ, Էնվէր, Ճեմալ, Պեհաէտտին Շաքիր, Տոքթ. Նազըմ եւ կրօնապետ Հասան Ֆահմի։ Այս ժողովին միակ օրակարգը՝ հայոց բնաջնջումն էր։ Համաշխարհային Ա. պատերազմը յարմար առիթն էր վերջնականապէս հայուն անունը երկրագունդին վրայէն սրբելու։ Անոնց գլխաւոր պատճառաբանութիւնը այն էր, որ հայերը կ'օգնէին Թուրքիոյ թշնամի ռուսերուն, հայերը պատճառ կ'ըլլային որ թուրքերը տուժին օտար պետութիւններէ եւ հայոց ներկայութիւնը թրքական հողին վրայ՝ արգելք կը հանդիսանար Թուրքիոյ անկախութեան եւ յառաջդիմութեան...։ Եւ այս բոլորին առաջքը առնելու համար՝ պէտք էր անմիջապէս իրագործել առնուած որոշումը, ջարդել հայ ժողովուրդը։

Շուտով կազմուեցաւ եռանդամ *գործադիր* մարմին մը՝ Պեհաէտտին Շաքիրէ, Տոքթ. Նազըմէ եւ Միտհատ Շուքրիէ բաղկացած. ասոնք էին որ կազմակերպեցին պատմութեան մեծագոյն ցեղասպանութիւնը...։

■ Տեղահանութիւն, աքսոր, ջարդ, բարոյական եւ նիւթական մեծարժէք հարստութեանց բնաջնջում եւ կողոպուտ...։

Եւ այս բոլորը կատարուեցան հայերու «բարեկամ» ժողովուրդներու աչքերուն առջեւ...։

Սակայն, հոգեկան ո՛չ մէկ ազնիւ գիծ եւ մշակութային ո՛չ մէկ արժէք ունեցող հասարակ ոճրագործ թուրքը ի՞նչպէս ըմբռնէր, որ պատմութիւնը հայ աշխատաւէր, ընդունակ, եւ բարոյական բարձր ու անկողոպտելի նուիրականութիւններ ունեցող ժողովուրդի ճակտին «յաւերժական» բառը դրոշմած էր։

Յաւերժական է հայը իր պատմական փառապանծ անցեալով, ներկայ Մայր Հայրենիքի իրականութեամբ եւ վառ յոյսերով լի ապագայով։

ՊԵՏՐՈՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ

ԼԻԲԱՆԱՆ

# ԳԷՈՐԳ ԿԱԿՈՍԵԱՆ ԵՐԳԵՑ

*Մարտի 31ին, 1966, ընտրանի հասարակութիւն մը փութացած էր Գ. Կիւլպէնկեան սրահը, ունկնդրելու Ազգային Երաժշտանոցէն վերջերս շրջանաւարտ երիտասարդ պարիթոն-պաս երգիչ՝ Գէորգ Կակոսեանի երգահանդէսը։*

*Ռիմսքի Քորսաքոֆի «Շանսոն Վարէկ» և Զայքովսքիի «Ցիշատակ» երգերու բաւական լաւ կատարումէն ետք՝ մեկնաբանեց Վերտիի «Տոն Գարլոս»ի Ֆիլիփփոյի դերերգը, որուն մէջ դժուար էր արտաբերումը տարբեր երանգներու։ Նման պարագաներուն՝ կարճ տիաբազոնը՝ յուսացուած արդիւնքը չի տար յաճախ։*



*Յաջող էր Մոցարթի «Տոն Ճիովաննի» օփերայէն Մազեթթոյի դերերգը։ Այստեղ ան կրցաւ ապրումով և յատուկ դերակատարութեամբ մեկնաբանել յիշեալ երգը։*

*Անմահն Կոմիտաս վարդապետի «Գարուն ա»ն քնարական շունչով մը հաղորդուեցաւ մեզի։*

*Գ. Կակոսեան շատ յաջող կերպով կատարեց Արմէն Տիգրանեանի «Դաւիթ Բէկ» օփերայէն Դաւիթ Բէկի դերերգերը («Շուրջս լուռ է» և «Օ՜ իմ չքնաղ»)։ Այստեղ՝ երիտասարդ երգիչի մօտ տեսանք գեղարուեստական բարձր թեքնիք։ Ան կրցաւ լաւապէս դրսեւորել ազատատենչ հայ իշխանի կերպարը և իր ապրումն ու յուզումը փոխանցել հանդիսականներուն։ Նոյնն էր պարագան նաև Հոր Հորի դերերգին համար (Ա. Տիգրանեանի «Լէյլէպիճի Հոր Հոր» օփերայէն)։*

*Օտար հեղինակներու ստեղծագործութիւններէն իրենց յաջողագոյն մեկնաբանութիւնն ունեցան Ճիորճու Էնեսքուի զոյգ երգերը։*

*Լիբանանահայ երաժշտասէր հասարակութիւնը կրցաւ իր գնահատանքի ու խրախուսանքի բաժինը բերել երիտասարդ երգիչ Գէորգ Կակոսեանի շրջանաւարտութեան առաջին երգահանդէսին, որուն դաշնակով կ'ընկերակցէր սիրուած երգչուհի և դաշնակահարուհի, Պէյրութի Պետական Երաժշտանոցի փրոֆեսորներէն՝ Տիկին Արփինէ Փեհլիվանեան։*

*Երիտասարդ և շնորհալի երգիչին կը մաղթենք լայն հնարաւորութիւններ, զարգացնելու իր երգարուեստը, որպէսզի դառնայ ըսփիւռքահայ արուեստագէտներու մեծարժէք փաղանգի մէկ անդամը։*

Գ. Մ.

# ՍԱՀԱԿԵԱՆ ԼԻՍԷԻ ԱՍՈՒԼԻՍԸ

(Շար. Զ. էջէն)

*Մտաւորական չորս անձնաւորութիւններ՝ երիտասարդ եկեղեցական՝ Հոգշ. Տ. Գէորգ Ծ. Վրդ. Կարպիսեան, բազմամեայ կրթական մշակ՝ Պր. Խաչէր Գալուստեան, Սահակեան Լիսէի հոգաբարձութեան անդամ՝ ընկեր Յովհաննէս Հաննէսեան և «ԱՐԱՐԱՏ» օրաթերթի խմբագրապետ՝ ընկեր Ժիրայր Նայիրի հերթով պատասխանեցին պատրաստուած հինգ հարցումներուն և լայն չափի վրայ լուսաբանեցին ներկայ հասարակութիւնը։ Անոնց ելոյթները բարձր գնահատուեցան հայկական դատին յաջողութեամբ խանդավառ նորահաս սերունդին մօտ, որ Սահակեան Լիսէի երդիքին տակ, անգամ մը համար եւս կշռեց ծանր տարողութիւնը Հայուն մե՛ծ Նախճիրին...*

Կարելի՞ էր Եղեռնը կանխել *հարցումին շուրջ տեսակէտներու փոխանակման պահուն, ընկեր Գ. Տարօնի յիշեց պերճիմաստ մէկ արտայայտութիւնը Թալէաթի ահաբեկման կազմակերպիչ՝ Պր. Շահան Նաթալիին, որ 1963 թուին Պէյրութի մէջ յայտարարած էր։*

— ԱՅՈ՛, ԿԱՐԵԼԻ ԷՐ ԱՊՐԻԼ 24Ը ԿԱՆԽԵԼ. ԵԹԷ ԳՈՆՍԹԱՆՑԱՅԻ ՀՆՉԱԿԵԱՆ ԵՕԹՆԵՐՈՐԴ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՉՄԱՏՆՈՒԷՐ ԵՒ ԿԱՄ ՆՈՅՆԻՍԿ, ԱՆՈՐ ՄԱՏՆՈՒՄԷՆ ԵՏՔ, ՄԵՆՔ, ՔԱՋՈՒԹԻՒՆԸ ՈՒՆԵՆԱՅԻՆՔ ՀԵՏԵՒԵԼՈՒ ԱՆՄԱՀԱՆՈՒՆ ՓԱՐԱՄԱԶԻ ՈՐԴԵԳՐԱԾ ՑԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՈՒՂԵԳԾԻՆ։

*Ասուլիսի վերջաւորութեան իր արտասանած փակման խօսքին մէջ ընկեր Գէորգ Տարօնի հաստատելէ ետք թէ նոր թուրքը իր մորթը փոխած է միայն և ոչ թէ իր հոգին, յայտարարեց.*

— Նահատակները, մեր ժողովուրդի անմահ հերոսները մեզի կը պատգամեն ապրիլ, գոյատեւել ու յաւերժանալ հայութեան եւ անոր վերածնած ու վերածաղկող մա՛յր հայրենիքին՝ արեւաշո՛ղ Հայաստանին համար, տրամաբանութեան առո՛ղջ զգացումներով եւ դրակա՛ն մօտեցումներով ծամակուած։

*Սահակեան Լիսէի այս Ապրիլեան Ասուլիսը խո՛ր գոհունակութիւն պարգեւեց ներկայ հասարակութեան, որ սրահէն բաժնուեցաւ նո՛ր երազներով և նո՛ր յոյսերով։*

ԹՂԹԱԿԻՑ

Պէյրութ, 26 Ապրիլ 1966

## ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

( Շար. Ա. էջէն )

Անկախութեան ընձեռուած բարեկամութիւնը և պաշտպանութիւնը մեծագոյն փաստն է, որ Քոսիկինի հայրենիքը անկեղծօրէն բաղձացողը և հետապնդողն է՝

— Աշխարհի խաղաղութեան,
— Ժողովուրդներու բարեկամութեան,
— Մարդկութեան երջանկութեան։

Հակառակ մեզի եղած քաղաքական, տնտեսական, շինարարական և մշակութային մեծ օժանդակութեան, Քոսիկինի հայրենիքը բացարձակապէս չի խառնուիր ՍԱՄՀի ներքին գործերուն և միջ-երկրային յարաբերութիւններուն։

Ազգայնական է ՍԱՄՀ. Սովետները կը յարգեն մեր ազգայնականութիւնը։ Ընկերվարական է ՍԱՄՀ, արաբական առումով. Ս. Միութիւնը կը հասկնայ և կը հաւանի ատոր։ Դեմոկրատական ենք մենք. Պուլկանին, Խրուշչով, Միկոյեան, Պրեժնեւ, Փոտկորնի, Քոսիկին և բոլորը կը վաւերացնեն ատիկա։ Վերջապէս՝ անկախաբար քաղաքական և տնտեսական խիստ սերտ մեր կապերէն՝ Ս. Միութիւնը կը ճանչնայ արաբութեան վեհապետական զգացումներն ու իրաւունքները և կը ջատագովէ — մեզի չափ — մեր ազատութիւնը։

Այսքան առողջ, յստակ և ապահով հիմքերով բարեկամութիւն մը, Արաբեւսովետ բարեկամութիւնը, ոչ միայն անքակտելի և անխորտակելի է, այլ օրէ օր կը վերածուի մեծ ազդակի մը՝ ի շահ աշխարհի խաղաղութեան պահպանման եւ յաւերժացման։

Ապրի՛ն այս գերահրաշ իրականութեան կերտիչները։ Ապրի՛ն Ապտէլ Նասէրներն ու Քոսիկինները։ Ապրի՛ն ու միատեղ յառաջդիմեն արաբ և սովետ ժողովուրդները, դառնալով բոլոր արդար ժողովուրդներուն բարեկամը։

ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷ՛Ք

ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
ՏԻԿՆԱՆՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԵԱՆ
ՏԱՐԵԿԱՆ ՃՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԻՆ

# ՕՊԵՐԺ ՏԷ ՓԻՐԱՄԻՏԻ

ԳԵՂԱՏԵՍԻԼ ՊԱՐՏԷԶՆԵՐՈՒՆ ՄԷՋ
Շաբաթ, 11 Յունիս 1966ին
Մանրամասնութիւն յաջորդով

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ Հ.Մ.Ը.Մ.Ի ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԿԵԱՆՔԷՆ

# ԶԲՕՍԱՊՏՈՅՏ ԴԷՊԻ ՎԵՐԻՆ ԵԳԻՊՏՈՍ

Երկար ժամանակէ ի վեր սկաուտական շարժումը նպատակ ունէր իր անդամներուն առիթ ընծայել, այցելելու փարաւոնական Եգիպտոսի մշակոյթի միւս կեդրոն Լուքսորը, քանի Մեմֆիս քաղաքը մօտ ըլլալով շատ անգամներ այցելած են։ Այս տարի Գուրպան Պայրամի և Զատկուան տօներուն, շարժումս կրցաւ 5 օրուան զբօսապտոյտ մը կազմակերպել, որուն ընթացքին կարելի եղաւ այցելել նաեւ ներկայ Եգիպտոսի «հսկայ բուրգ» Ասուանի Բարձր Ջրամբարը և ջրելեկտրակայանը։ Մարտ 31ի կ. ե. ժամը 2.30ի ճեպընթացով՝ 25 անդամներէ բաղկացած խումբը մեկնեցաւ Աղեքսանդրիայէն ու 2.30 ժամէն հասաւ Գահիրէ, ուրկէ դէպի Ասուան։ Հասանք զուարթ և ուրախ գիշեր մը անցընելէ ետք։ Տեղաւորման կարգադրութիւնները կատարելէ ետք՝ ժամէ մը աւելի ինքնաշարժով պտտեցանք կառուցուող Ասուանի նոր թաղամասերը՝ մինչեւ ներկայ Ջրամբարը և իր Ջրելեկտրակայանը, որոնց ի տես անդամները յստակ գաղափար մը կազմեցին։

Նեղոսի ափին վրայ գտնուող Շեհերազատ անունով ճաշարանը ընթրելէ ետք՝ գացինք հանգստանալու։

Յաջորդ օրը այցելեցինք Ասուանի բուսաբանական պարտէզը, փիղերու կղզին, Նեղոսի ջուրը չափելու վայրը, Աղա-Խանի դամբարան-մզկիթը եւն, և ապա մեկնեցանք դէպի Բարձր Ջրամբարը։

Ճամբուն վրայ «Քալապշա»ի տեղափոխուած և նոյնութեամբ վերականգնուած մեհեանին մէջը շրջելէ ետք՝ հասանք Ջրամբար, ուր լայն բացատրութիւններ ըստանալով՝ պտտեցանք Ջրամբարի զանազան աշխատանքի վայրերը և ականատես եղանք այս վիթխարի գործին շարունակական յաղթական յաջողութիւններուն։

Գլխու պտոյտ տալու աստիճան տպաւորիչ էր ելեքտրաշարժիչ սարքերու տեսքը և որքան հիասքանչ, եթէ յիշենք թէ անոնց մեծամասնութիւնը հայ աշխատող մտքերու և ձեռքերու արդիւնքն են։ Հետագային անոնք ծածկուած պիտի ըլլան պէթոնէ կառոյցներով և տեսնողը պիտի չկարենայ հասկնալ, ինչպէս մեր տեսած ժամանակ, այն հսկայական ճարտարագիտական և մղիչ ոյժի հանճարը՝ որով կարելի կ'ըլլայ սոյն իրականութիւնը։ Պտտեցանք հսկայական պահեստի նոր մեքենաներու մթերանոցները և ի վերջոյ թերեւս 50 քառ. մղոն տարածութեամբ այս հըսկայական աշխատավայրի ամբողջ մասերը։

Մեծապէս տպաւորուած այս փարաւոնեան փառքերուն արժանի հրաշալիքներէն, վերադարձանք քաղաք՝ ուր կրկին Շեհերազատի մէջ ճաշելէ ետք՝ մեկնեցանք Լուքսոր։ Հանգիստ ճամբորդութենէ վերջ՝ հասանք Լուքսոր, նախապէս Թէպ կոչուած քաղաքը, ուր շուտով տեղաւորուեցանք. ընթրեցինք և կանուխէն քնացանք։

Յաջորդ օրուան արշալոյսը մեզ գտաւ արթուն։ Նախաճաշեցինք և բացատրողի մը առաջնորդութեամբ, այցելեցինք Քարնաքի տաճարը։ Շատ գոհ մնացինք մեր «կիկերոն»էն, որ թէեւ երիտասարդ՝ բայց ամենայն համբերութեամբ տուաւ ամբողջական բացատրութիւններ։

Երեկոյեան, տարբեր ոճերով շինուած, և զանազան հաւատքներու ծառայած, Լուքսորի մեհեանները պտտելէ ետք՝ ունէինք դեռ բաւական եռանդ խմբովին մօտ 2 ժամ հեծելանիւով քաղաքին մէջը պտտելու։

Վերջին օրը, կարեւորագոյն այցելութիւնը կատարեցինք դէպի «Թագաւորաց Հովիտ»ը, ուր տեսանք թէ որքան խնամքով և հարստութեամբ նախկին եգիպտացիները կը պատրաստէին իրենց երկրաւոր կեանքի վերջին կայանը և, ուր որմագրերով կը բացատրէին իրենց հաւատքը

(Շար. տես էջ 6)

## ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԵԱՆ 45 ԱՄԵԱԿԸ

( Շար. Դ. էջէն )

կտորը (Շաքոնին) պահանջած յարափոփոխ ելոյթները — ուժականութիւն, արագութիւն, մեղմ ու հեզասահ, բուռն կամ զուսպ հոգեվիճակ — հոյակապօրէն արտայայտելով հիացուց ունկնդիրները, որոնք բուռն, փոթորկալի ծափերով զինքը պատուեցին։ Վայելեցինք Կոմիտասի Քելեր-ցոլերը Տոմպայեանի (հայ) կողմէ ջութակի համար դաշնաւորուած։ Երբ հայ ունկնդիրը ականջ կուտայ իր աննման պաշտելի Կոմիտասին, անոր հոգին կը սլանայ դէպի հայրենի լեռներն ու ձորերը, կը թրծուի անոնց կախարդական սիրովն ու անհուն կարօտովը, և միայն Բարիքեանի մը հմայիչ ճպոտին ճարտարութիւններն են, որ կրնան այլեւս ունկնդրելի դարձնել սլաւոնական կամ հունգարական կենսունակ և ոգեւորիչ պարերգները, որոնք հաճոյքով ըմբոշխնեցինք անյագօրէն։ Իսկ անբաղդատելի Սոցարթին զոյգ կտորները՝ Ատաճիօ մի մաժէօրի վրայ K. 261, և ռօ մաժէօրի վրայ Ռոնտօ K. 373 նուագուեցան տաղանդով եւ արտայայտչական դարձնելով այս կատարեալ արուեստագէտին հիասքանչ արուեստը։ Դաշնակի վրայ՝ Բարիքեանին կ'ընկերակցէր Տիկ. Հ. Օթթօ։

Օրուան բանախօսն էր Պր. Համբարձում Գարայեան, որ մշակոյթի փրկարար դերը բացատրելով եւ պատմական դէպքերու յիշատակութեամբ ըսաւ՝ թէ հայ ժողովուրդը գերազանցապէս մշակութասէր ժողովուրդ մը ըլլալու՛ն կը պարտի իր գոյութիւնը. անդրադարձաւ Գեղարւեստասիրացի 45ամեայ կեանքին, դրուատեց տարուած աշխատանքը եւ գովքը հիւսեց բոլոր աշխատաւորներուն, որոնք անարծաթ մշակները հանդիսացած են այդ «փոքր ածուի»ն։

Ուրախ ենք արձանագրելով այստեղ թէ ամսոյս 7ին, Մանուկ Բարիքեան Գահիրէի օփերային մէջ մենակատարեց Պեթհովէնի Գոնչերթոն։

Ժողովուրդը ուշ գիշերով մեկնեցաւ Նայլ Հոլ սրահէն տպաւորիչ հանդէսի վայելքը ապրած ըլլալու գոհունակութեամբ։

Ս. ՇԱԼՃԵԱՆ

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

19 ՄԱՅԻՍ 1966


## ԱՇԽԱՏԱՆՔԸ ԱՆՊԱՅՄԱՆ ԿԸ ՎԱՐՁԱՏՐՈՒԻ···

(Շարունակութիւն Բ. էջէն)

ղովրդականութիւնը. և անոր համապատասխան էր իր երգեցողութիւնը՝ նախ Ֆ. Տիւրանթէէն խնդագեղ «Տանցա՛, տանցա՛, ֆանչուլլա» և Ռ. Շումանէն «Գնոչ մը սէրը», ապա՝ Ֆ. Շուպերթի «Ձմեռնային ճանապարհորդութիւնը» և Ժ. Պիզէի մէկ սերենատը («Բա՛ց քո սիրտ»ը):

Այստեղ՝ Հացունիի մեծագոյն յաջողութիւնը եղաւ ժուժկալութիւնը և համաչափութեան պահպանումը: Մշակուած է երգչուհին, որովհետեւ գիտէ զուսպ ըլլալ և քաղցրօրէն զգայուն, քընքուշօրէն պերճ՝ երգին ներքին յատկանիշներուն հանդէպ:

Գարանֆիլեան վերերգեց Տիգրան Չուխաճեանի «Գարուն»ով և Սպենդիարեանի «Ա՛յ Վարդ»ով: Հեռու է մեզմէ բաղդատութեան որեւէ փորձ մեր մեծ երգիչներու կատարումին հետ, բայց Գարանֆիլեան կրցաւ, ընդհանրական (ընկալեալ) մեկնաբանութիւնը կատարելով մէկտեղ՝ ենթակայական գիծ մըն ալ յաւելուլ կտորներուն վրայ: Գարանֆիլեանի ձայնը, ինչպէս օտար լեզուով երգերուն՝ նոյնպէս և հայերէն այս կտորներուն մէջ, դուրս եկաւ իր բնական (մեզի ծանօթ) համեմատական ծաւալով: Ճի՛շդ է որ չենք յագենար անոր կալուածին ծիրէն, բայց այստեղ մենք վայելեցինք արդար և խղճամիտ մեկնաբանում մը, որուն կրնայ ազգային հուրի գիծ մը աւելնալ՝ եթէ արուեստագէտը քանի մը շաբաթ ապրի Սաշտոցի նահանգին մէջ:

Օր. Հացունին թրթռացուց իր հակակշռուած ձայնը Ա. Այվազեանի «Արաքս Գետ»ը և Եդ. Յակոբեանի «Սիրոյ երազով» երգերով:

Դադարին, հանդիսականներէն մաս մը, դուրսը դահլիճներուն մէջ, բարձրաձայն կ'արտայայտուէր և կը վիճէր երկու երիտասարդ արուեստագէտներուն հրապարակային այս խիստ յանդուգն ձեռնարկին մասին՝ անոր առաջին ունկնդրուած բաժինին շուրջ տալով իր հիացիկ վկայութիւնը: Յաջողած էին արուեստագէտները:

Հանդէսին Բ. մասը սկսաւ Վ. Մոցարթի «Տոն Ճովանի» օփերայէն զուգերգով մը, զուարթ և թեթեւահամ, շնորհալի ու խնդագին:

Հացունիի կատարումներուն ամենէն յատկանշականը եղաւ, կը խորհիմ, Փուչչինիի երկու կտորները — «Ճանի Սքիքի» և «Պոհեմ» օփերաներէն: Ձայնային ի վայր աստիճաններէն մինչեւ միջինը՝ Հացունիին ճարտարութիւնը, կարողութիւնը և կարծեմ ինքնավստահութիւնը նշանակելի էին: Սակայն բարձր աստիճաններու վրայ՝ արձակումի անոր ազատութիւնը չէր գտներ վերակոչումի իր համեմատական ելքը կամ հաւաքումի իրացումը:

«Տոն Փասքուալէ» օփերայէն (Տոնիձեթթի) հատուած մը Գարանֆիլեանէ. ասոր յաջորդեց Արմէն Տիգրանեանի «Անուշ» օփերայէն (Յ. Թումանեանի) «Մոսիի արիա»ն: Ուրախալի է որ մեր սիրելի Միքայէլը այստեղ կրցաւ հայրենի երգիչներու (Մ. Երկաթ և Ն. Յովհաննէսեան) համը բաւարար չափով բերել մեզի: Խոշոր յայտագիր մը սպառելէն ետք, առապար բնոյթով հատուածի մը կատարումը, այսպէս ճշգրիտ ու հաւատարիմ կերպով, շնորհաւորելի ըլլալէն աւելի բան մըն է:

Հայ. Գեղ. Միութեան ատենապետ պ. Վ. Տեփոյեան բեմ եկաւ շնորհակալիքի խօսքերով՝ Տիկին Ճէյլան Ռաթլի, որուն սաներն էին երիտասարդ այս արուեստագէտները: Շնորհակալութիւն յայտնեց նաեւ ընկերակցուհի Տիկ. Շ. Իփէքեանին և Մօ. Ե. Յակոբեանին:

Յայտագիրը աւարտեցաւ փոխերգով մը՝ Վերտիի «Թրավիաթա»էն: Այստեղ՝ Հացունի և Գարանֆիլեան անգամ մը եւս ապացուցին, որ քրտնաթոր աշխատանք թափած են պարկեշտ ու վաւերական կատարումի կարողութեան հասնելու համար: Բնութեան ընծայած օժտումին կից, ներգոյ տաղանդին հետ, կամքի ոյժը և արուեստի կիրքը՝ վստահաբար պիտի հասցնեն մեր երիտասարդ արուեստագէտները դէպի այն բարձունքը, որուն կը ձգտին իրաւացիօրէն:

Բեմին վրայ՝ Տիկին Ռաթլի երկու քովերը՝ խոնարհութիւններով շնորհակալութիւն յայտնող արուեստագէտներուն ուղղուած գրեթէ անվերջանալի ծափահարութիւններէն ետք, ժողովուրդը կը ձգէր սրահը՝ գնահատանքի և հիացումի անվերապահ արտայայտութիւններով և յստակօրէն տեսնելով փայլուն այն ապագան, որուն պիտի հասնին անխոնջ այս շնորհալիները:

Հ. Ժ.

### «ՋԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պր. Հրաչը Մարգարեան (Աղեքս.) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ իր աներհօր Պր. Աբրահամ Սվաճիպաշեանի (Ամերիկա):

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի գնահատութիւն թերթիս ազգային-ընկերային ուղղութեան, Պր. Կարապետ Մալխասեան (Աղեքս.) կը նուիրէ 100 ե.գ.:

Պր. Ժոզէֆ Քէշիշեանի ընդ Օր. Սիլվա Աճէմեանի բարեբաստիկ ամուսնութեան առթիւ, վասն շնորհաւորութեան Պր. Պետրոս Տընկճեան կը նուիրէ 100 ե.գ.:

### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Տէր և Տիկին Գրիգոր Չէչճէնեան իրենց թոռնիկին՝ Ծոնիկի մկրտութեան առթիւ կը նուիրեն 500 ե.գ.:

Տէր և Տիկին Վահան Չէչճէնեան իրենց սանիկին՝ Ծոնիկի մկրտութեան առթիւ կը նուիրեն 200 ե.գ.:

Տէր և Տիկին Գաբրիէլ Չէչճէնեան իրենց զաւկին՝ Ծոնիկի մկրտութեան առթիւ կը նուիրեն 200 ե.գ.:

Օր. Անահիտ Պչագճեանի ընդ Պր. Յակոբ Սերայտարեանի բարեբաստիկ ամուսնութեան առթիւ, վասն շնորհաւորութեան կընուիրեն.
Տէր և Տիկ. Սարգիս Գալաճեան
Տէր և Տիկ. Նուպար Գալաճեան
Տէր և Տիկ. Զաւէն Գալաճեան
100ական ե.գ.:

